**1917** **№ 23—ՅՈՒՆԻՍԻ 18** **ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ**

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԳՐԱԿԱՆ ԵՒ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 կոպէկ — Լոյս է տեսնում կիրակի օրերը — 10 կոպէկ

ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 3 ռուբլի.
Արտասահման՝ տարեկան 5 ռ., կէս տարուան 3 ռ.

ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝ Թիֆլիս, Արասարաղեան հրապար. № 7·
Հեռախօս № 29.

Պոստի հասցէն.— Тифлисъ, „Амбаваберъ", Tiflis, Rédaction du journal «Hambavaber».

ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝ տողին 10 կոպէկ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2, բացի կիրակի և տօն օրերից
Տպագրուելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման:

Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։

Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների աաթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարւում գրաւոր բացատրութիւններ տալ։

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ





## ՍԽԱԼՈՒԱԾ ՉԵՆՔ

Անցեալ մեր յօդուածը գրելիս մենք չէինք կարող ենթադրել անգամ որ ընդամենը մի երկու-երեք օրից յետոյ մի խոշոր փաստ պիտի գայ ապացուցանելու մեր՝ նոյն իսկ ամենամռայլ եզրակացութիւնների կատարեալ հնարաւորութիւնը.—այն, որ գերագանցօրէն տարօրինակ է հայ ժողովրդի ճակատագիրը.— այն, որ նրա համար երաշխիք չէ նոյն իսկ և ազատութիւնը.— այն, որ կարող են մեր տուած անհուն և անթիւ զոհերի կոյտերի վրայ ամարդօրէն սեփականութեան իրաւունք պաշտպանել.— այն, որ կարող են մեզ մեր արնախում սեփականատէրերին վերադարձնել և դրանով յաւիտեան ջնջել մեր գոյութիւնը։

Սարսափելի են այս եզրակացութիւնները։ Բայց կեանքը ապացուցում է որ երևակայածից աւելի սարսափելի բաներ կարող են պատահել հայի ճակատագրի մէջ։

Ներկայումս, ինչպէս յայտնի է, Պետրոգրադում տեղի ունեն Ռուսաստանի բանուորական և զինուորական խորհուրդների ներկայացուցիչների նիստերը, որ ռուսական սոցիալիստների մի խոշոր և շատ էլ ազդու հատուածը, որ կրում է «բոլշևիկ» անունը, մի շարք ծայրայեղ պահանջներ է անում։ Գլխաւորապէս հարցն այն է որ ամեն միջոց գործադրուի հաշտութիւն կնքելու համար։ Ահա այդ պահանջների մէջ էր, ինչպէս երևում է, և այն, որ ռուսական բանակը մաքրէ Թիւրքաց Հայաստանը, վերադարձնէ նրան Թիւրքերին։

Ահա թէ ինչ է ասում յօշոտուած Թիւրքահայութեան ճակատագիրը։ Ամենածայրայեղ կարմիր ռամկավարութիւնը, այն, որ նոյն իսկ ոչ հեռաւոր ապագայում խոստանում է մարդկութեան մի ամբողջ դրախտ, հրէշաւոր, սարսռեցուցիչ չէ համարում որ այժմից իսկ, մինչև պատերազմի վերջանալը, Թիւրքական կախաղաններից հրաշքով ազատուած բիւրաւոր մարդիկ նորից յանձնուեն իրանց դահիճներին։

Միայն հայը կարող է այսպիսի «կարմիր» արդարադատութեան արժանանալ։ Չէ՞ք հաւատում։ Հրէն Գալիցիայի մի մասն էլ գրաւուած է ռուսական զօրքերով։ Բայց խօսք չէ արուած որ այնտեղից եւ հեռանայ ռուսական բանակը։ Պարզ ու մեկին հընչում է միայն մի անուն—Թիւրքաց Հայաստան։ Ամեն ինչ տեսել է այս դժբաղդ երկիրը։ Ինչո՞ւ չտեսնէ և այս մի երևոյթը, վերջինը, կարծեմ, ամենածայրայեղը, ինչ կարելի է երևակայել մարդկային տարօրինակութիւնների աշխարհում—ազատութիւնը, որ հանում է սանձերը գազանութեան արիւնոտ բերանից և տալիս է նրան դարձեալ և դարձեալ մորթելու, արեան ճապաղիքներով մինչև վերջին ծայրը յղփանալու հաճոյք...

Երևոյթը, ճիշտ է, այսօր դեռ մասնաւոր բնաւորութիւն է կրում և նրա նշանակութիւնը չափազանցելու հիմք չունինք։ Բայց այսօր է այսպէս։ Վաղը նա կարող է դառնալ մի ամբողջ տարերային շարժում։ Յեղափոխութիւնը անակնկալներից է հիւսւում։ Վաղը կարող է կատարեալ յաղթանակ տանել այն ուղղութիւնը, որ ուզում է մտցնել ռուսական յեղափոխութեան մէջ Լենինը։ Վաղը կարող է կտրուել և այն բարակ թելը, որ այսօր մեր գլխին կախ է պահում դամոկլեան սուրը։

Իսկ մենք, հայերս, մի դժբախտութիւն ունինք.—շտապել չենք սիրում։ «Աստուած ողորմած է»... «վաղը տեսնենք ինչ կը լինի»։ Մեր դարաւոր գերութեան սրբագնագործած այս ինքնասպանութիւնը ամեն անգամ մեր ոտներին է փաթաթւում, երբ ահեղ ճայթմունքները մեզ նախազգուշացնում են, մեզ արեան և ջնջման խօսքեր են բերում։

Եւ մենք լուռ ենք այսօրուայ ահաւոր նշանների առջև էլ, ինչպէս եղել ենք միշտ։ Ամեն մի մասնաւոր խօսք անգամ, որ սպառնական նշանակութիւն ունի մեր գոյութեան համար, պիտի ուժեղ դիմադրութեան հանդիպէր մեր կողմից, պիտի հարկադրէր մեզ դուրս հանել մեր հոգեկան ինքնապաշտպանութեան ամբողջ թափը։ Իսկ ներկայ դէպքում ահեղ խօսքը մասնաւոր շրջանակից չէ դուրս գալիս, այլ Ռուսաստանն իր ձեռքում բռնած, հրամայող և կառավարող ռամկավարութեան մի խոշոր և ուժեղ հատուածից։

Ի՞նչ ենք, սակայն, անում մենք։ Նստած ենք Աստուծու ողորմութեամբ և լուռ ենք. կարծէք մեր հասցէին չէ որ արձակւում են դատավճիռները։

Մի՞թէ խօսել չը գիտենք։ Մի՞թէ նիւթ չունինք։ Մի՞թէ մեղանում մեռել է բողոքի զգացմունքն անգամ։

Ոչ։ Խօսել գիտենք, նոյն իսկ չափազանց շատ, լեզուագարութեան հասնող չափերով։

Ունենք և նիւթեր։ Ահռելի, սարսեցնող նիւթեր, որոնցից կարելի էր կազմել հազարաւոր հատորներ։

Գիտենք և բողոքել։ Դեռ նոր էր որ հայ աշխատաւորութիւնը բողոքի ցոյց արաւ աւստրիական սոցիալիստ Ադլերի մահապատժի դէմ։

Բայց էլ ի՞նչն է մեզ պակասում։

Եւ ահա նորից ու նորից մեր առջև է գալիս հին ցաւը, նոյն կախարդական օղակը, որի մէջ անվերջ ու անյայտ պտտելուց խեղդւում ենք։ Այդ ազգովին գործելու, ազգային գիտակցութեամբ առաջնորդուելու անկարողութիւնն է։ Մենք կարծես ամաչում ենք որ բնութիւնը մեզ համար բացառութիւն չէ կազմել և մենք էլ մէկն ենք աշխարհում ապրող, գոյութեան դաժան կռիւ մղող հազարաւոր ազգերից։

Թէ չէ՝ մի՞թէ բիւրաւոր հայ տղաներ և աղջիկներ, որոնց սպառնում է դահիճների ձեռքն ընկնելու հնարաւորութիւնը, մի Ադլերի չափ էլ չկա՞ն։

Թէ չէ՝ դժուա՞ր էր միթէ թարգմանել և տպագրել անգլիական կառավարութեան հրատարակած Կապոյտ Գիրքը, որի մէջ սառնասրտութեամբ, փաստերի սարսեցնող անժխտելիութեամբ պատկերացած է հայ ժողովրդի ամբողջ խողխողումը, գուցէ ամենաանտանելին այն բոլոր ոճիրներից, որ կարողացել է կատարել մարդ ասուած բանը երբ և իցէ։

Ահա ինչեր կարող ենք մենք դնել այն մարդկանց և կուսակցութիւնների առջև, որոնք մեր վիճակի կարգադրութիւնն են յանձն առել իրանց վրայ։

Բայց ի՞նչ ենք ասում։ Նոյն իսկ լրագրական յօդուածներով էլ զլացանք մեր դժգոհութիւնը, մեր բողոքը յայտնելու։

Ամաչում ենք որ ազգութիւն ենք և իբրև ազգութիւն էլ ունենք մեր մեծ, կենսական հարցերը։

Ահա ուր եկանք հասանք 1914-ի կամաւորական շարժման տենդից յետոյ։

ԼԷՕ

# ՄԻՈՒԹԻՒՆԸ ՈՅԺ Է

«Համբաւաբեր»-ի անցեալ համարում մեր ականաւոր գրող պ. Լէօն բարձրացրել էր մի շատ այժմէական և կարևոր հարց։ Յարգելի յօդուածագիրը հայ ժողովրդի պատմութեան կարմիր էջերն ու ներկայ ահաւոր վիճակը պատկերացնելուց յետոյ, շեշտում է այն վնասակար անջատողականութեան վրայ, որ այսօր ձգտում են առաջ բերել ռուսահայ և Թրքահայ հատուածների միջև։

Հայ տառապանքի ու արեան ձայնը երկար տարիներ մեր ժողովրդի երկու հատուածները կապակցել է իրար հետ, միևնոյն ցաւով, հայրենիքի ազատագրութեան միևնոյն տենչերով բոցավառուել ու ոգևորուել են նրանք։

Ճիշտ է որ մէկ հատուածը—արևմտահայութիւնը—անձնապէս ենթակայ է եղել տառապանքի ու սրածութեան, քայքայուել ու հիւծուել է, քշուել ու հեռացուել է իր սեփական հողից ու ջրից և դարձել ջարդուփշուր ու հալածական, բայց միւս հատուածը—ռուսահայութիւնն էլ անսալով իր եղբայրական պարտքի գիտակցութեան ձայնին՝ փութացել է օգնութեան ձեռք կարկառել իր տանջուած եղբօր և մեծ չափով հոգացել է նրա ֆիզիքական ու բարոյական կարիքը։

Մեր նպատակը չէ բնաւ այստեղ ցոյց տալ թէ արևելահայ հատուածը ինչ չափով կատարեց իր պարտականութիւնը, ո՛րքան կարողացաւ մեղմել ծով թշուառութիւնը. այդ աշխատանքը մենք թողնում ենք պատմութեան անաչառ դատաստանին։ Բայց որ արևելահայ ժողովուրդը յանձին իր գիւղացութեան և մտաւորական ուժերի անկեղծ և ազնիւ զգացումներ է ունեցել դէպի տառապող ցեղակիցը, որ նրա ցաւերը համարել է իրենը, նրա դատն իր դատը, այս մասին յիմարները միայն կարող են կասկած ունենալ։

Մեր մեծ տառապանքն ու արիւնոտ դատն է եղած այդ

*զգացումին անկեղծութեան զօրավիգը ու մեր արիւնոտ ճակատագիրն ու ապագայ ակնկալութիւններն էլ պիտի զօրաւոր հիմնաքարերը դառնան մեր եղբայրական միութեան։*

*Այս պարզ ճշմարտութիւնն, վայրկեանի այս լուրջ ու տըրամաբանական ըմբռնումը սակայն մի քանի տհաս ուղեղների կողմից սխալ հասկացուելով, թիւրիմացութիւն է առաջ բերել և ստեղծուել մի չփոթ և վնասակար մթնոլորտ։*

*Այս ու այն կողմից ձայնում են թէ Տաճկահայաստանի հարցը միայն իրենց տաճկահայերին է վերաբերում, թէ արևելահայը պիտի այլ ևս ձեռք քաշի արևմտահայի գործերից...*

*Միւս կողմից տարբեր ծայրայեղութիւններ էլ ռուսահայերի մէջ են երևան գալիս ամեն օր. ծայրայեղութիւններ, որ երբէք չէր կարող ցոյց տալ մի գիտակից ժողովուրդ, որ արեան ճապաղիքների, փլատակների ու գերեզմանների միջովն է անցել։*

*Ներկայ ճգնաժամային րոպէներին երբ ազգերի ինքնորոշման, մանր ժողովուրդների ազատագրութեան նման կարդինալ և մահուան ու կեանքի արժողութիւն ունեցող հարցեր կան դըրուած հրապարակի վրայ, երբ իւրաքանչիւր րոպէն յղի է ծանր անակնկալներով, այդպիսի պատասխանատու վայրկեանին, հայ ժողովրդից մանաւանդ կը պահանջուի ազգային միութիւն և ազգային իդէալների անշեղ հետապնդումն։*

*Տաճկահայաստանի խնդիրը, մեր թափած ծով արեան և մեր թշնամու կատարած ոճիրների գնով բազմապատկուած այդ արդար խնդրի լուծումն՝ այս կամ այն հատուածի, արևելահայի կամ արևմտահայի խնդիրը չէ, այլ հայ ցեղի ամբողջութեան, ռուսական մեծ ժողովրդի և ամբողջ մարդկութեան մտահոգութեան հարցն է, և մենք հայերս պատմական այս լուրջ գիտակցութեամբ զինուած ոչ թէ պառակտումի մոլար ու աղէտալի ճանապարհներ պիտի ստեղծենք, այլ միութեան և համազգային գործունէութեան շինարար ուղին։*

*Թրքահայ գաղթականութեան կարիքների, երկրի վերաշինութեան, քրդական բարբարոսութիւնների սանձահարութեան նման կարևոր և այժմէական խնդիրները՝ հայութեան ամբողջականութեան մտահոգութիւնն պէտք է կազմեն. մի հատուածի փոքրիկ ոյժը անկարող է բաւարարել ծով կարիքը։ Ամբողջ հայութեան միացեալ զօրութիւնն անգամ դեռ բաւական չի գալիս մեր կարիքների և հոգսերի բաւարարման գործում, այլապէս կարիք չէր ստեղծուի օտար ազգերի և մարդասէրների միջամըտութեան։*

*Այս պարզ ճշմարտութիւնը մի՞թէ բաւական չէ համոզելու մի կարգ պարոններին, որոնք իրենց քաղաքական տհաս մտքերով կուզեն պղտորել հրապարակը։*

*Գործունէութեան ձևը կարող է միշտ փոփոխութեան ենթարկուել նպատակայարմարութեան համեմատ, կարող է այս կամ այն մարմինը ձեռք առնել ժողովրդի կարիքների բաւարարման գործը, բայց որ գործունէութեան եղանակն ու գործող մարմինները պէտք է բղխեն համազգային տուեալներից և կամքից, այդ երկու կարծիք չի կարող վերցնել։*

*Բաւական է, որ հայի չարաբաստիկ պատմութիւնը կըրկնուի, մեր արիւնոտ ճակատագիրը միշտ մնայ արիւնոտ ու դաժան, շնորհիւ մեր անհեռատես և անխոհեմ քայլերի։ Բաւական է որ հայի հին, ոխերիմ և դարանակալ սպասող օձը—անջատման ոգին—բարձրացնէ իր թունաւոր գլուխը, սերմանէ իր մահաբեր թոյնը։*

*Մեզ համար այժմ հարկաւոր է համազգային աշխատանք, հատուածամոլ ու ծայրայեղ տենչանքներից զտուած աշխատանք։*

*Միութիւնը ոյժ է. պէտք է միանգամ ընդմիշտ ըմբռնենք ու մարսենք այս յաւիտենական և տարրական ճշմարտութիւնը։*

*Ա. Արծիւեան*

## ԱՆՅԵՏԱՁԳԵԼԻ ՊԱՀԱՆՋ

*Այս հրամայական պահանջը դնում է գաղթական որբերի ապագան։ Մինչև հիմա մենք մի կերպ պահպանեցինք նրանց ֆիզիքական գոյութիւնը, դպրոցականի հասակ ունեցողներին էլ մասամբ ուսում տուինք, բայց հետզհետէ ստուարանում է 15-17 տարեկան երեխաների թիւը, և մի երկու տարի յետոյ մեծամասնութիւնը կկազմեն նրանք, որոնց առջև դրուած կը լինի ապագայի հոգսը։ Հիմա արդէն շատ տղաներ և երեխաներ աւարտելով որբանոցների և կամ գաղթականական դպրոցների տարրական ուսումը, դիմում են միջնակարգ դպրոցներին, բայց տարաբաղդաբար մանաւանդ այս տարի, շատ քչերը պիտի կարողանան տեղաւորուել։*

*Ի՞նչ պէտք է անել։*

*Անհրաժեշտ է այսուհետև մեծերին զատել փոքրերից և առանձին հանրակացարաններում պահել, նրանց ձեռնահաս դաստիարակների ազդեցութեան ենթարկել և ապագայի համար լուրջ պատրաստութիւն տեսնել։ Այսպիսով գաղթականների կեանքում պիտի մի ուրոյն գործ բացուի, գաղթականական գործերից կարևորագոյնը, որին կապուած է Արևմտեան Հայաստանի նոր սերունդի ապագան։*

*Արևմտահայերի Երևանի համագումարը ընտրել է մի կենտրոնական խորհուրդ գաղթականական գործերի մէջ ակտիւ մասնակցութեան համար։ Հերթական հարց է դարձած այս պահանջը։ Ինչպէս էլ որ լուծուի երկու կողմերի հայերի գործակցութեան խնդիրն այս ասպարիզում, արևմտահայերը պէտք է աշխատանքի բաշխման հիմունքով, բացի կենտրոնական կարգադիր խորհուրդի մասնակցութիւնից, նաև առանձին գործունէութեան իրական շրջան ունենան։ Գաղթականական զանազան գործերը համեմատելով, մենք պէտք է գանք այն եզրակացութեան, որ նայելով շրջապատող հանգամանքներին, արևմտահայերի համար ամենից աւելի յարմար պարապմունքը կը լինէր յօդուածումս դրուած պահանջին բաւարարութիւն տալը։ Գաղթականների մտքին ու սրտին աւելի մօտ է իրենց ժողովրդի մատաղ վերաշինութեան գործը. նրանք են որ ամենից աւելի ջերմ սիրով ու փայփայանքով պէտք է ձեռնարկեն այդ ծանրակշիռ գործունէութիւնը։*

*Մեծ երեխաների շրջանում աւելի հեղինակութիւն կարող*

են ունենալ արևմտահայերը, որ այսուհետև անհրաժեշտ է թիւրիմացութիւնների հետևանք անախորժութիւնները վերացնելու համար։

Բարեբաղդաբար որբերի պետական նպաստը այսուհետև կրկնապատկուելու է, 30 ռ. է նշանակուել։ Եթէ արևելահայերի և արևմտահայերի կազմակերպութիւնների ներկայացուցիչները միանալով մի ղեկավար մարմին կազմեն ու կոչ անեն մեր և օտարահմանեան համակիր հասարակութիւններին, այս նուիրական նպատակի համար միջոցներ չեն պակասի։ Պէտք է փութալ ծրագիր կազմել և ներկայացնել արևմտահայերի նոր սերունդի ապագայով հետաքրքրուողներին։ Թ. Հ. Կ. Կոմիտէն տեղեկութիւններ է հաւաքում 15 տարեկանից աւելի հասակ ունեցող որբերի մասին։ Նոր կազմակերպութիւնը պէտք է այդ թուերը լըրացնէ որբանոցներից դուրս եղած այդ հասակի դպրոցական և այլ երեխաների թուերով և ըստ այնմ մօտաւորապէս արտայայտէ առաջիկայ ուսում. տարուայ նիւթական պահանջը և միջոցներ հայթայթէ։

Յ Տէր-Միրաքեան

# ՀԱՅՈՒԹԵԱՆ ՄՆԱՑՈՐԴԸ ԹԻՒՐՔԻԱՅՈՒՄ

Իր 500-ամեայ գոյութեան ընթացքում Թիւրք կայսրութիւնը երբեք չէր հասել այն օրհասական դրութեան, որի մէջ նա գտնւում է այժմ։ Դաշնակիցները վերջապէս սկսել են նրան սեղմել մի երկաթեայ անխորտակելի թակարդի մէջ։ Վերջին երկու շաբաթուան ընթացքում անգլիական բանակների յաջողութիւնները Թիւրքիոյ զանազան ռազմաճակատների վրայ, նրանց յաղթական մուտքն ի Բաղդադ և նոյն քաղաքից դէպի հիւսիս-արևմուտք երկաթուղիի երկայնքն ի վեր, դարձեալ անգլօ-եգիպտական բանակների յառաջխաղացութիւնը Գազայի հովտում և գուցէ դէպի Երուսաղէմ, միաժամանակ ռուսական բանակի յաղթութիւնները Թիւրքօ-պարսկական լեռներում և Բաղդադից հիւսիս՝ երկու դաշնակից բանակների միացումը, ինչպէս նաև այդ զինուորական յաջողութիւնների հետ կապ ունեցող մի շարք հետևանքները՝ մեզ հայերիս համար ունին կենսական և անմիջական կարևորութիւն — թէ հանդէպ այն իրողութեան, որ անգլօ-ռուսական բանակները արդէն մօտեցել են այն սահմաններին, ուր տեղափոխուած են հայեր և թէ զինուորական գործողութիւնները կարող են ընդարձակուել դէպի Պաղեստինի և Եփրատի խորքերը, այդ երկու կառավարութիւնների հաւանութեամբ և աջակցութեամբ մենք ինչ միջոցներ կարող ենք ձեռք առնել, հնարաւորութեան չափով փրկելու այդ շրջաններում դեռ վերապրող մեր հայրենակիցները և նրանց անմիջապէս հասցնել նիւթական օգնութիւն։

Համաձայն այսօրուայ պաշտօնական լուրերին, անգլիացիք գրաւել են Բաղդադից դէպի հիւսիս երկարող երկաթուղիի վերջին կայարանը՝ Սամարրա։ Ֆրանսական նաւատորմը կատարել է մի ցոյց Բէյրութի նաւահանգստի առջև, իսկ անգլօ եգիպտական բանակը կռւում է Երուսաղէմից 50 մղոն դէպի հարաւ։

Հիմնուելով ամենահաւանական հնարաւորութիւնների վրայ, կարելի է ասել որ գուցէ շուտով մենք մեզ գտնենք շատ ուրախալի եղելութիւնների հանդէպ։

Ըստ ամերիկեան հայ-ասորական նպաստամատոյց յանձնախմբի տեղեկագրին և «Հայկական Կապոյտ Գրքի» ներկայացուցած հաշուին, Հալէպից դէպի Դամասկոս և Հիճազ երկարող սիւրիական երկաթուղու երկայնքը գտնւում են մեծ թուով հայեր։ Ցետագայ թուերը ընդունելով մօտաւորապէս ուղիղ, մենք կունենանք հետևեալ արդիւնքը.—

Դամասկոսից մինչև Մաան (դէպի հարաւ) և շրջակայքը, մօտ 100,000 հայ, Համա և շրջակայ գիւղեր (աւելի դէպի հիւսիս) մօտ 12,000 հայ, Հոմս և շրջակայ գիւղեր (աւելի դէպի հիւսիս) մօտ 20,000։

Ամենաստոյգ տեղեկութիւնների համաձայն, առնուած չէզոք աղբիւրներից, անցեալ փետրուարին Երուսաղէմում և շրջակայքում կային մօտ 25,000 հայեր (կարծում եմ որ այս վերջին թիւը բովանդակուած է Դամասկոսից մինչև Մաան հաշուած թիւին մէջ)։

Ցամենայն դէպս անգլիական բանակի այդ երկաթուղու գծին հասնիլը՝ մեզ կը բերէ դէմ առ դէմ մեծ թուով հայեր փրկելու հնարաւորութեան։

Ի պատասխան British Armenia կոմիտէին իմ արած դիմումին, այժմ Բաղդադից ստացուած է պաշտօնական տեղեկութիւն, որի համաձայն Բաղդադում անգլ. իշխանութիւնները յաջողել են խալիֆների տներից ազատել 80 հայ աղջիկներ և որոնք յոյս ունին դեռ հաւաքել 400-500 հայ աքսորեալներ այդ քաղաքում։ Բաղդադի հայոց առաջնորդը և հայ գաղութը, ինչպէս նաև ամերիկացի միսիոնարները ստանձնել են հայ որբերի խնամատարութեան գործը։ Ամերիկեան հայ-ասորական նպաստամատոյց յանձնախումբը արդէն հեռագրով Բաղդադ փոխադրած է 10,000 տոլար (աւելի քան 20,000 ռ.), հայ վերապրողների անմիջական կարիքների համար։ Բասրայից անմիջապէս դէպի Բաղդադ է մեկնել միսիոնար դր. Լիվեց՝ օգնելու հոն գտնուող ուրիշ մի միսիոնարի։

Հարցը աւելի լուրջ բնաւորութիւն ունի Պաղեստինի ռազմաճակատին վրայ, ուր մեծ թուով հայեր ցրուած են մի ընդարձակ անապատի տարածութեան մէջ և որոնց հաւաքման գործը պահանջում է կազմակերպուած ջանք և մեծ գումարներ։

Գէթ Երուսաղէմի մէջ ենթադրուած 25,000 հայերի փրկութեան պահուն նրանց կերակրելու միջոցներ պէտք է գտնել։ Երիտասարդ թիւրքերը մի դիտաւորեալ սովի մատնած են Սիւրիան և Պաղեստինը, որին գլխաւորապէս ենթարկուած է քրիստոնեայ բնակչութիւնը։

Առ այժմ դժուար է ասել որոնող խմբերի կազմակերպութեան մասին։ Գուցէ հոն են Զաւէն պատրիարքը և Օրմանեան սրբազանը։ Եթէ հոս Լոնդոնում գոյութիւն ունենար մի գործունեայ և նրանց դրութեամբ հետաքրքրուող հայկական մարմին, նա անպայման կարող էր լաւ դեր կատարել ներկայ րոպէին՝ տարագրուած հայերի փրկութեան գործում։

Լոնդոն ԱՐՇԱԿ ՍԱՖՐԱՍՏԵԱՆ

# ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԱՆՀՐԱԺԵՇՏՈՒԹԻՒՆԸ

Ռուսական յեղափոխութիւնը ազատ ասպարէզ բացաւ ժողովուրդների և հասարակական կազմակերպութիւնների առաջ։

Իւրաքանչիւր հիմնարկութիւն, իւրաքանչիւր դասակարգ, այժմ ձգտում է օգտուել այդ ազատութիւնից։

Գումարւում են մէկը միւսի ետևից համագումարներ, դասախօսութիւններ և միթինգներ հասարակական կեանքը կազմակերպելու և նոր կարգերին համապատասխան դարձնելու։

Զկայ հին բռնապետական բաղուկը, որ ոտնահարէ ու կաշկանդէ ժողովրդի ազատական թռիչքները։ Այժմ ազատութիւնն իր արարչաւ թափերով սլանում է քաղաքից քաղաք, խրճիթից խրճիթ, փրկութեան խօսք մրմնջում նրան՝ որ երկար տարիների ընթացքում խաւարի և կեղեքումի մէջ պահել է ճնշուած դասակարգերը։

Մարդիկ վերածնւում են՝ ոչ թէ միայն ֆիզիքապէս, այլ բարոյապէս։ Ֆիզիքական ու բարոյական վերածնութիւն. ահա թէ ինչ օգտակար գործ կարող է կատարել ազատութիւնը։

Բայց ազատութիւնը կը մնայ լոկ երազ, կը մնայ բաղձալի բայց ոչ իրականացած մի իղձ, եթէ հող չկայ նրա համար, եթէ ժողովուրդը պատրաստուած չէ։

Հարկաւոր է պատրաստել ժողովուրդը ազատութեան համար։ Ամենից առաջ պէտք է բաւարարել ժողովրդի ֆիզիքական ու մըտաւոր կարիքները։

Մտաւոր կարիքների բաւարարութեան համար անհրաժեշտ է լայն հիմքերի վրայ դրուած ժողովրդական դաստիարակութիւն, կուլտուրական յարատև աշխատանք։

Այդ պարտականութիւնը ամենամեծ չափերով կընկնի այն հաստատութիւնների ուսերին, որոնց նպատակն է ժողովրդի լուսաւորութիւնն ու կրթութիւնը։ Կ. Հ. Բ. Ընկերութիւնը, որպէս հայ ժողովրդի լուսաւորութեան կարիքների բաւարարութեան ձգտող մի խոշոր կազմակերպութիւն, մեծ դեր պէտք է խաղայ ներկայ պայմաններում։

Մեր ժողովուրդը խոր տգիտութեան մէջ է դեռ ես. դպրոցների, ժողովրդական-հանրամատչելի գրադարան-ընթերցարանների թիւը շատ սակաւ է, գիւղացութեան խոշոր զանգուածը դեռ ես լողում է նահապետական սովորութիւնների և հասկացողութիւնների մէջ։ Հայկական գիւղերի և անկիւնների մեծ մասը անծանօթ է մնացել մեր մտաւորականութեան և խեղդուած իր բազմաթիւ կարիքների մէջ։ Գաւառացի հայ ժողովուրդը ներկայ կարգերին և ազատութեան անպատրաստ է, բառիս լայն իմաստով։ Նա տակաւին անգիտակ է իր արդար իրաւունքների և բաժին ընկած պարտականութիւնների ասպարիզում։

Գաւառն իր մթութիւնից, իր տարտամ, խաւար և կեղեքուած վիճակից դուրս բերելու համար, անհրաժեշտ է լսել նրա ձայնը. նրա ցաւերին ու աղաղակներին ականջալուր լինել, հաւաքել ամեն անկիւններից նրա ներկայացուցիչներին, խորհրդակցել ու ծրագրել գործունէութեան լայն և ըստ ամենայնի օգտակար ծրագիր։

«Համբաւաբեր»-ի № 20-ում հայ հասարակական գործիչ պ. Ս. Յարութիւնեանը իր «Կ. Հ. Բ. Ընկերութեան համագումարի առթիւ» վերնագրով յօդուածում հարց էր բարձրացրել գումարել Ընկերութեան բոլոր ճիւղերի ներկայացուցիչներից մի համագումար։ Ահա մի լաւ միջոց, մի օգտակար ձեռնարկ, որ գաւառական կեանքի բարեփոխութեան գործում մեծ դեր կարող է խաղալ։ Կ. Հ. Բ. Ընկերութիւնը հայկական ամենամեծ հաստատութիւնն է, որ գաւառական բազմաթիւ մասերում ճիւղեր ունի և որ կարող է ներկայ պայմաններում մեծ գործ կատարել։

Որպէս զի գումարուելիք համագումարը մեծ արդիւնք տայ պէտք է հետևեալ հանգամանքների վրայ ուշադրութիւն դարձնել։

1) Աշխատել որքան կարելի է գաւառական բոլոր անկիւնները, ուր Ընկերութիւնը ճիւղ ունի, իրենց ներկայացուցիչներն անպայման ունենան համագումարում, իսկ բովանդակ գաւառը ներկայացնել․ համար ճիւղեր բանալ այն շրջաններում, ուր չըկան։

2) Հրահանգել գաւառական ճիւղերին պատրաստել համագումարին՝ ոչ միայն ուղարկելով ձեռնհաս ներկայացուցիչներ, այլ գրաւոր, փաստացի զեկուցումներով պատկերացնել գաւառի իրական պատկերը, անհրաժեշտ կարիքներն ու պահանջները, ըստ տեղական պայմանների։

3) Ընդարձակել Ընկերութեան գործունէութեան սահմանագիծը. կանոնադրութիւնը ենթարկել փոփոխութեան, համապատասխան Ռուսաստանում տիրող ներկայ ազատական կարգերի և Ընկերութիւնը դարձնել համազգային, չը սահմանափակելով միայն Կովկասում։

Այս և նման կարևոր խնդիրները յանձնում ենք համագումարը կազմակերպող մասնաժողովի ուշադրութեան։

Ալ. Մանուկեան

## ՌԱԶՄԱԿԱՆ ՏԵՍՈՒԹԻՒՆ

Վերջին մի քանի շաբաթների ընթացքում համաշխարհային պատերազմի ծանրութիւնը տեղափոխուած է ֆրանս-անգլիական ճակատում առաւելապէս և մասամբ էլ իտալականում։

Գերմանացիք օգտուելով Ռուսաստանում տիրող ներկայ երերուն և սպասողական վիճակից՝ իրենց զօրքերի ամենամեծ մասը տեղափոխեցին ֆրանս-անգլիական ճակատի վրայ, դաշնակիցների հետզհետէ աճող առաջխաղացութեան առաջն առնելու համար։

Ռուսական ճակատը մնաց հանդարտ, ռուս զինուորներն եղբայրացման և նման այն ցնորքներից ազդուելով, սպասողական դիրք բռնեցին։ Իսկ գերմանացիք ույժ չունէին այդ ճակատի վրայ գրոհ տալու համար, երկրորդ, որ գերմանացիք շատ ճարպիկ և նենգ կերպով շահագործեցին Ռուսաստանի կացութիւնը. նրանք ոչ մի շարժում չարին՝ որպէսզի չարթնացնեն և չը բորբոքեն ռուս զինուորի ռազմական տենչը։

Արևմտեան ճակատում դաշնակից զօրքերը հերոսական դիմադրութեամբ կարողանում են դիմանալ գերմանական գրոհներին։ Նրանք ոչ միայն իրենց ձեռքում են պահում առաջուց գրաւուած դիրքերը, այլ և դանդաղօրէն առաջանում են։

Շեվրէից արևելք, Իպրէքրիզի ուղղութեամբ լարուած թընդանօթամարտ է։ Արմանտիէրից հարաւ գերմանացիները ուժեղ յարձակումներ են գործում, բայց միշտ էլ յետ են մղւում ծանր կորուստներով։

Կովկասեան ճակատում մասնակի ընդհարումներ են միայն տեղի ունենում։ Ռուս սոցիալիստների մեծամասնական ֆրակցիան պահանջ էր դրել Հայաստանը դատարկել ռուս զօրքերից։ Այդ միանգամայն սարսափելի ու ոճրադաւ պահանջը բարեբախտաբար մերժումի հանդիպեց զինուորական նախարար Կերենսկու կողմից։

Հայաստանից ռուս զօրքերին դուրս բերելը ոչ միայն մեծ վնաս է ռուս պետութեան շահերին, այլ և սոսկալի հարուած աշխատաւորութեան պատուին և շահերին։ Եթէ սոցիալիստները պաշտպանում են մանր ժողովուրդների, ճնշուած ազգերի և աշխատաւոր դասի օգուտը՝ ապա ուրեմն նրանք պէտք է Հայաստանը պաշտպանեն ընդդէմ թիւրք իմպերիալիզմի և վանդալականութեան։

Ռուս զօրքի հեռանալով, թիւրք և քիւրդ բարբարոսների վոհմակները պիտի յարձակուին հայ և քրիստոնեայ աշխատաւոր և խաղաղ տարրերի վրայ և պիտի կոտորեն, հրի ու սրի մատնեն երկիրը։

Մեծամասնականների այս արտառոց և վնասակար ձգտումի դէմ ոչ միայն հայ ժողովուրդը պիտի ծառանայ իր բոլոր ոյժերով, այլ և գիտակից դեմոկրատիան, այն դեմոկրատիան, որ պաշտպանում է մանր ժողովուրդների և աշխատաւոր տարրի շահերը։

Լեման

## ԱԽԼԱԹԻ ԿՈՏՈՐԱԾԸ

ՓՐԽՈՒՍ

Ախլաթ գաւառից 10 վերստ հեռաւորութեամբ ընդարձակ հարթավայրի վրայ շինուած է Փրխուս գիւղը, որ նշանաւոր է իր լայնատարած արօտատեղիների և յստակ ու անուշ ջրերի կողմից։ Գիւղը նախանձելի էր նաև կուլտուրապէս և տնտեսապէս, համարւում էր շրջակայ գիւղերի կեդրոնը և կառավարւում էր մուդիրի (գաւառապետի) ու 10—15 ժանդարմների կողմից։

Նախքան համաշխ. պատերազմը գիւղն ունէր 250 տուն հայ բնակիչ, որոնք պարապում էին երկրագործութեամբ։

1915 թ. երբ այլ գաւառների համատարած կոտորածը սկըսուեց, մուդիրը հաւաքեց փրխուսցիներին և վստահեցրեց որ մինչև վերջին շունչ պիտի աշխատի պաշտպանել հայերին և ազատել կոտորածից։ Գիւղացիները համոզուելով այդ չարահոգի մարդու նենգ խօսքերից, մտնում են տեղերնին անշարժ և չեն մտածում փախչելու և ազատուելու մասին։

Ապրիլ 28-ին կոտորածի հերթը հասաւ Փրխուսին։ Ցանթապաի յայտնի ոճրագործ և աւազակ Ավտըլ-Մէճիտը իր արբանեակներով եկաւ և պաշարեց գիւղը, հաւաքեց գիւղացիներին և ենթարկեց ծեծի ու չարչարանքի, որպէս զի իրեն յանձնեն ունեցածները՝ դրամ, կենդանիներ և իրեղէնները։ Րոպէապէս կատարուեց ուզուրպատոր Ավտըլ-Մէճիտի հրամանը, իսկ մուդիրը փոխանակ հայերին պաշտպանելու, հաւաքեց գեղեցիկ աղջիկներին և հարսներին ու բաժանեց ժանդարմներին և քիւրդերին, իսկ մընացած հայերին հսկողութեան տակ առնելով պահեց ահ ու սարսափի մէջ...

Ապրիլ 30 ին սկսեց անխնայօրէն կոտորել 2,400-ից աւելի կին, մարդ և երեխայ, որոնցից ազատուեցին 300 անձ, որոնք մի կերպ պահուել էին թաքստարաններում և չէին նկատուել թըշնամու կողմից։

Նախքան պատերազմը Փրխուս ունեցել է մի քարաշէն եկեղեցի, մի ձիթահանք և 3 դպրոց։

Քիւրդերը խլել են 1,250 եզ, 4,200 ոչխար, 800 կով, 300 ձի և այլն։

Այժմ յիշեալ գիւղը աւերակների մի կոյտ է ներկայացնում։

Յովսէփ Ռաշոյեան

## ԵՐԵՒԱՆԻ ԳԻՒՂԱՑԻԱԿԱՆ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ

Երևանում մայիսի 20-ին Հ. Յ. Դաշնակցութեան ղեկավարութեամբ գումարուած գիւղացիական բազմամարդ և բազմացեղ համագումարը տուել է հետևեալ որոշումները.

1. Համագումարը քննելով ներկայ քաղաքական և տնտեսական դրութիւնը, գտնում է, որ նահանգի բոլոր աշխատաւոր գիւղացիները, որոնք ճնշուած են եղել քաղաքականապէս և հարստահարուած տնտեսապէս, պէտք է միանան մի նահանգական գիւղացիական միութեան մէջ։ Այդ միութեան մէջ չեն ընդունուելու։ Նախկին կառավարութեան պաշտօնեաները, վաշխառուները և զանազան այլ հարստահարիչները։

2. Միութեան նպատակն է.

ա) Պատրաստել Սահմանադիր Ժողովին, ուղարկել այնպիսի մարդիկ, որոնք կը պաշտպանեն աշխատաւոր գիւղացութեան «հողի, ջրի և ազատութեան» պահանջները։

բ) Հսկել պետական մարմինների օրինապահ լինելուն։

գ) Պաշտպանել աշխատաւոր գիւղացուն զանազան կեղեքումներից։

դ) Իրագործել այն որոշումները, որ արել է ներկայ համագումարը։

ե) Նպաստել այն բոլոր ձեռնարկութիւններին, որ բղխում է աշխատաւոր գիւղացութեան տնտեսական շահերից (կօօպերատիւներ, մեքենաներ գտնել, վար ու ցանքսի, ջրային, պարենաւորման և այլն հարցերում)։

զ) Նպաստել և զարկ տալ ամեն տեսակի բժշկական օգնութեան, ճանապարհների և այլ նման ձեռնարկութիւններին։

է) Կազմել հաշտարար կամերաներ այն վայրերում, ուր կը ծագեն վէճեր գիւղացիների ու կալուածատէրերի մէջ։

ը) Միջամտել և նպաստաւոր լուծում տալ բոլոր այն հարցերին, որոնք կը ծագեն գիւղացիների միջև՝ հողային և ջրային կարիքների շնորհիւ.

թ) Կազմակերպել հակայեղափոխական փորձերը ճնշելու գործը։

3. Գիւղացիական Միութեան կազմը.

ա) Գիւղի աշխատաւորութիւնը (առանց հարստահարիչների) միանալով, կազմում է գիւղացիական միութիւն, որ ընտրում է գիւղական պատգամաւորների խորհուրդ.

բ) Գիւղախմբի (հասարակութեան, գլաւայութեան) գիւղական միութիւնները միանալով, կազմում են գիւղախմբային գիւղացիական միութիւնն իր խորհրդով.

գ) Գիւղախմբային միութիւնների միացումից առաջանում է գաւառակային (участковый) գիւղացիական միութիւնն իր խորհրդով.

դ) Նոյն ձևով առաջանում են և գաւառական ու նահանգական միութիւնները իրենց խորհուրդներով.

ե) Նահանգական միութեան խորհուրդը լինելու է Երևանում.

զ) Նահանգի գիւղացութիւնը մասնակցում է 1917 թ. յունիսի 19-ի Անդրկովկասեան գիւղացութեան համագումարին և մտնում Անդրկովկասեան գիւղացիական միութեան մէջ, իսկ սրա միջոցով՝ համառուսական գիւղացիութեան միութեան մէջ։

4. ա) Իւրաքանչիւր աստիճանի գիւղացիական պատգամաւորական խորհուրդ հսկում և կապ է ունենում իր աստիճանի վարչական մարմինների հետ, իրագործում է միութեան նպատակները իր շրջանի և իրաւասութեան համաձայն։

բ) Իւրաքանչիւր աստիճանի միութիւն իր խորհրդի միջոցով կազմակերպում է համագումարներ, ժողովներ, ռեֆերենդումներ (հարցումներ), դասախօսութիւններ և այլն. հրատարակում և ստանում է թռուցիկներ, թերթեր և գրքոյկներ։

գ) Միութեան անդամները տալիս են անդամավճար՝ միութեան ծախքերը հոգալու համար։ Նոյն նպատակով կազմակերպւում են երեկոյթներ, ներկայացումներ և այլն։

5. Համագումարն անմիջապէս ընտրում է գիւղացիական նահանգական խորհուրդ, որին պատուիրւում է՝ կիրառել համագումարի բոլոր որոշումները, ստեղծելով իրեն կից անհրաժեշտ մարմինները. իսկ միութեան շուտափոյթ կազմակերպմանն անցնելով, գործակցութեան կոչ է անում այն բոլոր հիմնարկութիւններին և անհատներին, որոնք այդ գործում ձեռնհաս են։

Համագումարն ունեցաւ մեծ յաջողութիւն։ Շուտով՝ յունիսի 19-ին Թիֆլիսում կը կայանայ Անդրկովկասեան գիւղացիների ընդհ. համագումարը։

# Գեղարուեստ

* * *

Վերջալոյսի քօսոլներով հրավառ՝
Քրքում՝ քոյր,
Արեւնահա կը մարի…
Ինչ արբշռանք, ու երազնմ՝ վարդաթեւ…
Ինչ գեղեցիկ է հոգեւարքն Արեւին
Ու դոմ՝ անոր հուսկ պերճանքնմ՝ը հագած…
Հոգիիդ հետ, ինչ ժպիտնմ՝ աչքերէդ ինծ կը ծորին…
Ինչ լուսազմ՝ղ, ինչ կախարդմնք մ՝եռ լուսաթեւ, քոյր,
Քրքում՝ քոյր…

Իրիկնային մթնշաղին մէջ ընկղմած՝
Տրտում՝ քոյր.
Գիշերն ահա կը փրթի…
Տես աստղերը, երազներուն հետ ճերմակ,
Շուշաններուն պէս շար ի շար կը փթթին…
. . . Կուլամ, քոյր…
Բայց ինչու, ինչ կայ լալու, քոյր.
Տրտում՝ քոյր…

Թիֆլիս

ՎԻԹՈՌ-ՋԻՆՆԻ

---

## ՀԱՅՐԵՆԻ ԱՇՈՒՆԸ

Այգիներուն մէջ աշունն՝
Իր բերքի գոգն է բացեր.
Ծառ ու սաղարթ խշխշուն՝
Ողջերթի երգն են լացեր…

Մէգ-մշուշը կոլորտի,
Դաշտերուն ծոցը մռայլ.
Սար-լանջերէն կը յորդի
Վերջի գեղմունքն անփայլ։

Ո՞ւր է խնճոյքը համբուն…,
Ո՞ւր՝ գեղջուկները կայտառ…
Ո՞ւր՝ ջինջ մայիսնն հօտերուն…
Ինչո՞ւ այս սուգն անբարբառ…։

Թախծապատում յանկերգն է՝
Ծանր հովերուն հիւսիսի…
Դալկութիւնն է, որ կիջնէ…
Ուր մերկութիւնն կը մրսի…

Հ. Արտուր

# Տարեգիր Կ. Հ. Բ. Ընկ.

## ԽՈՐՀՈՒՐԴ

Կ. Հ. Բ. Ընկ. Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է.
—պ. Գէորգ Շաղինեանից և իւր ընտանիքից եղբօր՝ Ստեփանի դագաղի վրայ պսակ դնելու փոխարէն 100 ռ.։
—պ. Գրիգոր Իվանիչ Ապրելեանից յօգուտ չքաւորների 5 ռ.։
—Թեմիր Խան Շուրայից Լիւդմիլա Վլադիմիրովնա Կոմարովսկուց յօգուտ գերիների ազատման 10 ռ.։

## ՀԱՅԿ. ԿԵՆՏ. ԿՈՄԻՏԷ

Յունիսի 10-ին կայացաւ Հ. Կ. Կոմիտէի հերթականնիստը, նախագահութեամբ պ. Ս. Յարութիւնեանի, ուր զեկուցուեցին և եղան հետեւեալ որոշումները.

1) պ. Նախագահը յայտնեց ժողովին Կոմիտէի նախկին անդամ տիկ. Ղամբարեանցի մահուան մասին, աւելացնելով որ տիկինը երկար ժամանակ Կոմիտէի շարքերում աշխատել է հասարակական և գաղթականական աշխատանքներին, առաջարկեց նրա յիշատակը յարգել յոտընկայս, ապա ամբողջ կազմով ներկայ լինել թաղման, յայտնելով ցաւակցութիւն նրա զաւակներին։

2) Զեկուցուեց որ Խնուսից տեղս են հասել 74 որբ, որոնց հարկաւոր է երկու օր հանգիստ տալուց յետոյ ուղարկել որ և է վայր, ըստ որում յարմար համարուեց այդ որբերին էլ ուղարկել Ցարսկիէ-Կոլոդցի։

3) պ. Նախագահը զեկուցեց, որ փախստականների յատուկ խորհուրդը որոշել է ապրիլից փախստականներին տրուող նըպաստը աւելացնել՝ վեց ռուբլին դարձնելով 7 ռ. 50 կ., քաղաքում ապրող փախստականներին բնակարանային վարձը 3 ռ., գիւղերում ապրողներին՝ 2 ռ.։ Աշխատանքի անընդունակներին տրուող նախկին 10 ռ. նպաստը դարձել է 15 ռ. կէս տարուայ համար։

4) Կոմիտէի գանձապահի պաշտօնին հրաւիրուեց Խորհրդի անդամ պ. Ս. Լիսիցեանը։

## ՊԱՐԵՆԱՒՈՐՄԱՆ ԲԱԺԱՆՄՈՒՆՔ ՊԵՏ. ՄԻՋՈՑՆԵՐՈՎ

Յունիսի 7—15 ալիւր ուղարկուած է Ղամարլու 4 վագոն, Երևան՝ 2, Նոր-Բայազէդ՝ 2, Ներքին-Ախտա՝ 1, Գանձակ՝ 3, Քարվանսարա՝ 1 և Դիլիջան՝ 1, ընդամենը 14 վագոն։

Ցորեն ուղարկուած է Ղարաքիլիսա 1 վագոն, Նոր-Բայազէդ՝ 2 և Դիլիջան՝ 2, ընդամենը 5 վ.։

Սապոն ուղարկուած է Քարվանսարա 60 պ. և Երևան 200, ընդամենը 260 պ.։

Շաքար ուղարկուած է Երևան 600 պ.։

Նոր գնումներ. գնուած է Ռոստովում 1 վագոն սապոն։

Յունիսի 11-ին կայացաւ Պարենաւորման բաժանմունքի հերթական ժողովը, որտեղ զեկուցին Խնուսի և Ալաշկերտի պահեստների կառավարիչները՝ պ. պ. Փափազեանը և Կարօ Սասունին պահեստների դրութեան և գործունէութեան մասին։ Նրանց զեկուցումից երևաց, որ պահեստները լիքն են ամեն տեսակի մթերքներով և որ տեղական գաղթականութիւնը միանգամայն գոհ է պահեստների գործունէութիւնից։

Զեկուցողների խնդրի համաձայն որոշուեց լիազօրել պ. Գ. Փափազեանին պահեստներ բանալ Մոսունում և Դիւթաղում, որտեղ 17,000-ի չափ բնակչութիւն կայ։

Նոյն ժողովում որոշուեց բանալ պահեստ և Թալինի շրջանում, որտեղ մօտաւորապէս 3500 գաղթականութիւն կայ։

## ՀԵՌԱԳՐԵՐ

Հայկ. կենտր. Կոմիտէին Լոնդոնից պ. Արշակ Սաֆրաստեանը հեռագրում է.— «Երէկ Հայոց դրօշակի տօն էր. վերջացաւ մեծ յաջողութեամբ»։

## ՆՈՒԷՐՆԵՐ «ՀԱՄԲԱՒԱԲԵՐ»Ի ՏԱՐԱԾՄԱՆ ՀԱՄԱՐ

Յօգուտ «Համբաւաբեր»ի տարածման Գուլիշամբարեանի կտակակատարներից շնորհակալութեամբ ստացանք 500 ռուբլի։

## Քրոնիկոն

Կովկ. Հայոց Բարեգործ. Ընկ.-ը ազատութեան փոխառութեանը գրուել է 25,000 ռ.։

—Անդրկովկասեան երկրային առանձին խորհրդակցութիւնը իր վերջին նիստում որոշեց դիմել կառավարութեան, որ ամենամօտ ապագայում, մի քանի ամսուայ ընթացքում, մեր երկրում մտցուի զեմստվօ դեմոկրատիկ հիմունքներով։

—Պրոֆէսոր Ն. Մառի նախաձեռնութեամբ Թիֆլիսում հիմնւում է Կովկ. Հնագիտական ինստիտուտ։

—Ամսիս 15-ին բացուեց Անդրկովկասի կօօպերացիաների համագումարը, որը կը տեւի մինչև յունիսի 20-ը։

—Յունիսի 12-ին վախճանուեց Թիֆլիսի քաղաքային վարչութեան անդամ Միքայէլ Ջաբարը։

—Թիֆլիս է եկել ռուս բանաստեղծ Բալմոնտը, որ կարդալու է մի շարք դասախօսութիւններ։

—Երևանում Հ. Յ. Դաշնակցութեան նախաձեռնութեամբ կազմակերպուած գիւղացիական համագումարին մասնակցել են աւելի քան հազար պատգամաւոր հայերից, թուրքերից և ուրիշ ազգութիւններից։ Համագումարը տուել է կարևոր որոշումներ և ունեցել լաւ ազդեցութիւն։ Ալէքսանդրապոլում, Դիլիջանում և այլ գաւառներում նմանապէս կազմակերպւում են գիւղացիական համագումարներ։

—Արևմտահայ գաղթ. խորհուրդը Մեսրոպ եպիսկոպոսից ստացել է 110,000 ռ. նպաստ գաղթ. որբանոցների և դպրոցների օգտին։

—Կ. Լիսիցեանի երկսեռ գիմնազիոնն եկող ուսումնական տարուանից ազգայնանում է՝ պահպանելով պետական գիմնազիոնների բոլոր իրաւունքները, և այսպիսով լինելու է առաջին հայկական գիմնազիոնը Կովկասում։ Մինչև առաջին դասարան դասատուութիւնը լինելու է հայերէն։

—Թիֆլիսում լոյս է տեսնում Հ. Յ. Դաշնակցութեան «Աշխատաւոր» թերթը, որի շուրջը խմբուած են երիտասարդ և պատրաստուած ույժեր։ Թերթը բերան պիտի հանդիսանայ բանուորական և գիւղացիական շահերին։

—Բաքւում հրատարակւում է հայ սոցիալ-դեմոկրատների օրգան «Բանուոր» թերթը։

—Ամենայն Հայոց Կաթողիկոսը հրատարակել է ապրիլի 5-ին մի կոնդակ, որով կազմել է մի յանձնաժողով Յուսիկ արքեպիսկոպոսի նախագահութեամբ և Խորէն, Մատթէոս, Գէորգ, Տիրայր եպիսկոպոսների և Գիւտ աբեղայի անդամակցութեամբ, պաշտօն տալով այդ յանձնաժողովին՝ կազմել մի նոր ուրուագիծ այն սահմանադրութեան, որ պէտք է ունենայ Հայոց Եկեղեցին՝ 1836 թ. «Պոլոժենիայի» փոխարէն։ Այդ սահմանադրութիւնը պէտք է ենթարկուի ազգային ժողովի քննութեան։

—Երևանի գիւղացիական խորհրդի նախագահ Մեջլումբէկով խնդրել է 3-րդ Պետ. Դումայի անդամ Յովհ. Սաղաթելեանին՝ լինել Երևանի նահանգի գիւղացութեան ներկայացուցիչը Պետրոգրադում կայանալիք զին., բան. և գիւղացիական համագումարում այն պայմանով, որ հողային հարցը պաշտպանի Դաշնակցութեան ծրագրով։

## ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ

Նոր-Ջուղա, 26 մայիսի 1917

«Համբաւաբեր»-ի պատուարժան խմբագրութեան,

Սրանով գալիս ենք մեր խորին շնորհակալութիւնը յայտնելու պատուարժան խմբագրութեանդ, որ յարգելով Վարչութեանս խնդիրքը, բարի եղաք 10 օրինակ ձեր թերթից նուիրելու Սպահանի շրջակայքում գտնուող Փերիա և Ջարմահալի գիւղերին։

յարգանքներով

Ի դիմաց «Րաֆֆի» դրամ.-ընթերց. վարչութեան

Գ. Նահապետեան

## ՏԵՂԵԿԱՏՈՒ

Տրապիզոնից Հ. Կ. Կոմիտէին հաղորդում են, որ յունիսի 2-ին Օրտու քաղաքից նաւակով ազատուել են հետևեալ հայերը՝

Հրանուշ Կարապետ Խանճեան, 12 տարեկան, Տրապիզոն քաղաքից, Քենովաքէ Նշան Արշալեան, 15 տար., Օրդուից, Ծաղիկ Յակոբ Տալադեան, 19 տարեկան, Մաշմատ գիւղից, Ագնիւ Նշան Արշալեան 19 տար. Օրդուից, Վիգթորիա Կարապետ Ֆօնիկեան 19 տար. Պոլիս Գում Գափու, Մարիամ Կիրակոս Մէլէքեան 25 տար. Օրդու, Մաղմատ գիւղ, Միսակ Սողոմոն Տէր-Անդրէասեան 30 տար. Օրդուից, Մանուկ Սողոմոն Տէր-Անդրէասեան 39 տար. Օրդուից, Մկրտիչ Յովակիմ Լազեան 35 տար. Օրդուից, Ջիվան Աւագ Ծատուրեան 29 տար. Օրդուից, Գէորգ Դաւիթ Օհանեան 30 տար. Զավուշլար գիւղից։

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ
Հրատ. Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ
Тип. «СЛОВО» Гимназическая ул. № 1